Գրքգ խաճ.— Խաչատուր Գարապաճաղեան (առեւտրական, բնիկ Պէյլանցի, առնուազն Հ.Բ.Ը.Մ. տեղական մասնաճիւղին:

⁂ Արաբերէն «Էլ Ինչա» թերթին համաձայն, Սանճաքի վարչութիւնը հանրապետութեան պիտի վերածուի, ունենալով երեք նախագահ եւ 40 անդամէ բաղկացեալ Խորհրդարան մը: Լաւատեղեակ շրջանակներու մէջ կ'ըսեն թէ այս փոխանցման մասին համաձայնութիւն գոյացած է առնէ մը ի վեր եւ հիմա պիտի ճշդուին նախագահական թեկնածուները:

Հանրապետութեան նախագահ պիտի նշանակուի Հալէպ Էլիի պետ Ապտիւլկանի Թիւրքմէն, իբրեւ վարձատրութիւն այն ջանքերուն զոր թափեց Սանճաքին Թրքացման համար: Խորհրդարանի նախագահ պիտի ընտրուի Մէհմէտ Աբայը, որ ժամանակին անդամ էր Սուրիոյ Խորհրդարանին եւ անոր բաժէն կը պնդէր թէ Սանճաքցիները անքակտելիօրէն կապուած են Սուրիոյ, եւ թէ ի հարկին փողոց պիտի իջնէ իր հայրենակիցներուն հետ՝ կռուելու համար Սանճաքի Թրքացումին դէմ: Վարչապետութեան պիտի կոչուի ներկայ կուսակալ Տօքթ. Ապտիւրրահման Մէլէք: Ցայտնի չէ նախարարներուն թիւը:

Դամասկոսի Քրօնիկ թերթը այս առթիւ գրել կուտայ թէ Սանճաքի Խորհրդարանին մէջ պիտի բազմին Սուրիոյ նախկին նախագահ Սուպհի Պէրէքէթ եւ սուրիական Խորհրդարանէն ուրիշ անդամներ, որոնք մինչեւ հիմա չեն հրաժարած եւ կը շարունակեն ամսական ստանալ Սուրիոյ պետական գանձէն:

⁂ Անտիոքի մէկ ճաշարանին մէջ հայ սպասեակ մը (կառոն) արաբերէն ճաշացուցակ ներկայացուցած ըլլալով, Թուրք սպաներ չարաչար կը ծեծեն տղան եւ յետոյ բանտարկել կուտան:

## Չեխական կառավարութիւնը կ'ընդունի դաշնակցային պետութեան սկզբունքը

Եւրոպայի գլխաւոր մայրաքաղաքները լաւատեսութեամբ կը սպասեն չեխական տագնապին լուծման, Փրակա ընդունած ըլլալով վերածել երկիրը, համաձայն Անգլիոյ թելադրութեան, դաշնակցային պետութեան մը:

Այս ծրագրով, Չեխոսլովաքիա պիտի վերածուի քանի շրջաններու (քանթոն), հետեւողութեամբ Զուիցերիոյ: Իւրաքանչիւր շրջան պիտի ունենայ 400.000էն 800,0000 բնակիչ: Ծրագիրը մշակած է անգլիացի միջնորդին պատուիրակութիւնը, համախորհուրդ Չեխոսլովաքիոյ հանրապետութեան նախագահին եւ վարչապետին: Մանրամասնութիւնները անշուշտ գաղտնի կը պահուին: Պերլինի անգլիական դեսպանը գերմանական կառավարութեան հաղորդած է այս ծրագիրը: Երէկ կը սպասուէր Գերմաններու առաջնորդին՝ Հէնլայնի պատասխանին: Բարենշան երեւոյթ մը կը համարուի որ գերմանական մամուլը այժմ աւելի մեղմ լեզու կը գործածէ: Ամէն բան կախում ունի Գերմաններու ընթացքին: Լաւատեսներ կը յուսան թէ կարելի պիտի ըլլայ տագնապը լուծել գէթ առժամաբար, այլապէս կարելի չէ նախատեսել ելքը: Կը կարծուի թէ Հէնլայն գոնէ սկզբունքով հաւանութիւն պիտի յայտնէ նոր ծրագրին, եթէ Պերլին չընդդիմանայ: Անգլիացի միջնորդին գլխաւոր պատուիրակը, որ Լոնտոն գացած էր վերջերս, նոր տեսակցութիւն մը ունեցաւ Հէնլայնի հետ:

### ՋԱՆԱՋԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՓՈՔՐ ԱՍԻՈՑ ԹՐՔԱԿԱՆ ՅԱՂԹԱՆԱԿԻ 16րդ տարեդարձին առթիւ, արտակարգ զօրահանդէս մը կատարուեցաւ Էնկիւրիի մէջ, խոշոր թնդանօթներու, հրասայլերու եւ օդանաւերու ցուցադրութեամբ: Ամբողջ երկիրը զարդարուած էր միլիոնաւոր դրօշներով եւ լոյսերով, երեքշաբթի օր (30 օգոստոս):

ԱՆԳԼԻԱ 400,000 ԹՈՆ ՑՈՐԵՆ պիտի գնէ Ռումանիոյ: (Երկու միլիոն ոսկի): Մէկ մասը ապրանքով պիտի վճարուի:

ԽՌՈՎՈՒԹԻՒՆՆԵՐԸ կը շարունակուին Պաղեստինի մէջ: Զօրքը կրակի տուաւ շատ մը տուներ, որոնք իբրեւ Թաքստոց ծառայած էին ըմբոստներուն: Ական մը պայթեցաւ Հայֆայի ճամբուն վրայ, դծէն դուրս հանելով կառախումբը: Ուրիշ քաղաքի մը կայարանը ամբողջովին քանդուեցաւ:

ՀԱԹԻՆ ԳԻՆԸ քան սանթիմ պիտի աւելնայ, ցորենի գինը բարձրացած ըլլալով:

## ՖՐ. Կ. ԽԱՉԻ Դ. ԽՈՒՄԲԻՆ ՄԵԿՆՈՒՄԸ

Ֆր. Կապոյտ Խաչի Շրջ. Վարչութիւնը կը խնդրէ մեզմէ ծանուցանել թէ Դ. խումբին համար ընտրուած եւ պատրաստուած տղաքը պէտք է ներկայ ըլլան այս շաբաթ օր, Սեպտեմբեր 3ին, ժամը 11ին gare Montparnasse: Ընկերութեան կողմէ արտօնուած է հաւաքուիլ Ancienne gare Hall d'entrée (մեծ սանդուղներէն բարձրանալով աջ կողմը):

Տղաքը իրենց հետ պէտք է ունենան ՄԷԿ ԱՆԳԱՄ ճաշելու չափ ուտելիք:

## ԿՐԿԻՆ ԿԸ ՅԻՇԵՑՆԵՆՔ...

Կրկին կը խնդրենք մեր գործակալներէն եւ բաժանորդներէն.—

1.— ԴՐԱՄԱԿԱՆ ՓՈԽԱԴՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԿԱՏԱՐԵԼ «ՇԷՔ ՓՈՍԹԱԼ»ով, Թիւ 1678-63 (Տես թերթին ճակատը): Այս ձեւը աւելի գործնական է եւ ԱԺԱՆ:

2.— Անոնք որ մեքենաբար սովորական «մանտա - փոստ» կը ղրկեն, ՊԷՏՔ ՉԷ ԱՆՈՐ ՎՐԱՅ ՆՇԱՆԱԿԵՆ «ՇԷՔ - ՓՈՍԹԱԼ»ԻՆ ԹԻՒԸ: Աւելորդ է եւ յամառական չէ եղած:



# Հ. Յ. Դ.

### Գաւառ

ՄԱՐՍԷՅԼԻ Ծոյ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ վալպարեյի «Վարուժան» խումբը 3 Սեպտ. Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, ընկեր Պետիկեանի բնակարանին մէջ: Ներկայ կ'ըլլայ Ընկ. Կ. Ճանիկեան:

ՊԱՏԱՆԵԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ «Րաֆֆի» խումբի (Մարսէյլ քաղաքի) բոլոր պատանիները 7 Սեպտ., Չորեքշաբթի երեկոյ «Շահրիկեան» սրահին մէջ: Կարեւոր օրակարգ:









### ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՍԷՆԹ-ԱՆԹՈՒԱՆԻ (Ավինեօն) Համազգային Միութեան ընդհ. անդամական ժողովը՝ 4 Սեպտ. Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին, Պ. Վ. Մինասեանի բնակարանը: Կարեւոր օրակարգ:

### ՅԻՇԱՏԱԿ - ՄԱՏՈՒՌ

Այրի Տիկին Մառի Թէքէրճեան, որ շատ դժբախտ մայր մը եղած է, կորսնցնելով իր երկու սիրասուն զաւակները, ծաղիկ հասակի մէջ, անոնց անմոռանալի յիշատակին համար ամբողջ ընտանիքին կողմէ կառուցանել տուած է մատուռ մը՝ Պանեէօի փոքրիկ գերեզմանատան մէջ: Հ. Արխատակէս Մատուռին օրհնութիւնը պիտի կատարէ այս Կիրակի, 4 Սեպտ. ժամը 3ին գերեզմանատան մէջ:

### ՊՈՄՈՆԻ ԾՆՈՂՆԵՐՈՒՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Պոմոնի եւ շրջանի Թաղական խորհուրդը մտահոգ՝ ֆրանսական վարժարան յաճախող հայ մանուկներու մայրենի լեզուի ուսուցման հարցով, ձեռնարկած է հիմնել հայերէն լեզուի եւ Հայոց պատմութեան դասընթացք մը, Հինգշաբթի եւ Կիրակի օրերը, շաբաթական երկու պահ:

Դասաւանդութիւնը պիտի կատարէ ծանօթ ուսուցիչ Պ. ՓԱՅԼԱԿ ՍԱՆԱՍԱՐ:

Կը հրաւիրենք ծնողները առանց դաւանական խտրութեան, փութան արձանագրել տալ իրենց 7 տարեկանէն վեր պզտիկները այդ դասընթացքին:

Արձանագրութեան համար կարելի է դիմել Կիրակի կէսօրէ առաջ եկեղեցւոյ բակը, իսկ սովորական օրերը 70 Bd. Vauquoise La Rosière, պ. Ճգնաւորեանի բնակարանը:

Le Gérant : H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Demesme — PARIS (13)

էն, առանց հաշուելու տարեկան արձակուրդները:

Համագումարին կը մասնակցին 1500 ուսանողներ, գրագէտներ եւ արուեստագէտներ, 53.000 անդամներ՝ հիթլէրական երիտասարդութենէն (մանչ եւ աղջիկ), 80.000 ներկայացուցիչներ հարուածային (փոթորիկ) խումբերէն, 27.000 անդամներ մարտական խումբերէն, 12.500 հոգի մեքենաշարժ վաշտերէն, 150.000 քաղաքական վարիչներ, 16.000 ներկայացուցիչներ՝ «Ուժ ուրախութեամբ» կոչուած կազմակերպութենէն, 8000 հոգի գործարաններէն, 4000 ներկայացուցիչներ արտասահմանի Գերմաններէն, 13.000 զինուորներ զանազան զօրամասերէ, առանց հաշուելու մեկուսի կազմակերպութիւնները, դիւանագէտները, թղթակիցները, ականաւոր օտարականները:

Ժողովին բացումէն առաջ Նիւրընպէրկի մէջ կանգնած էին 2750 վրաններ կամ տաղաւարներ, 360.000 հոգիի համար: 180.000 երկաթէ մահճակալներ շտկուած են դպրոցներու եւ քաղաքապետական հաստատութեանց մէջ: Հրաւիրուած են նաեւ օտար դեսպանները, որոնց տրամադրութեան տակ մասնաւոր կառախումբ մը դրուած է: Կ'ըսուի թէ Ֆրանսական դեսպանը միայն մէկ օր պիտի մնայ:

## Ուրիշ ազդարարութիւններ

Արտասահմանի Գերմաններու 6րդ համագումարին փակման առթիւ, բուռն ճառ մը խօսեցաւ Ռօքթ. Կէօպէլս, քարոզութեանց նախարարը: Այս առթիւ ազդարարեց.

— «Մենք կը ճանչնանք մեր թշնամիները, եւ կը յուսանք թէ անոնք ալ շուտով առիթ պիտի ունենան ճանչնալու մեզ: Մենք այն վաւերը չենք որ կառավարեցին կայսերական կամ մարքսեան Գերմանիան: Առանց հրացան մը արձակելու, Աւստրիան այսօր մաս կը կազմէ մեր երկրին: Այլեւս չկայ մէկը որ կարենայ անգիտանալ մեզ: Ազգային - ընկերվարական Գերմանիան ինքզինքը պարտադրեց իբրեւ մեծ պետութիւն եւ իր դերը կը կատարէ միջազգային գործերու մէջ: Աշխարհ կը նախանձի մեր Առաջնորդին: Անոր վարած Գերմանիան երբեք անձնատուր պիտի չըլլայ: Այդ Գերմանիան վստահ է իր ապագային վրայ, որովհետեւ ունի մարդ մը որուն կը հնազանդինք բոլորս»:

## Ֆրանքօ-ամերիկեան ցոյց մը

Ամերիկեան յիշատակարանի մը բացման առթիւ, կարեւոր ճառեր խօսեցան Ֆրանսայի արտաքին նախարարը եւ Փարիզի ամերիկեան դեսպանը, Փուանթ - տը - Կռաւի մէջ: Պ. Պոնէ յայտարարեց.

— «Երբեք ձեր եւ մեր վարիչները չեն ընդունած այն գաղափարը թէ պատերազմը ճակատագրական է կամ թէ կրնան անտարբեր մնալ, եթէ աշխարհ բռնկի, սպառնալով կործանել քաղաքակրթութիւնը ... Ամէն պարագայի մէջ, Ֆրանսա հաւատարիմ պիտի մնայ իր կնքած դաշնագիրներուն, իր ստանձնած յանձնառութեանց»:

Իսկ ամերիկեան դեսպանը շեշտեց.

— «Ամերիկացիները գիտեն որ մարդիկ աւելի երջանիկ կ'ապրին իբրեւ ազատ քաղաքացիներ քան ստրուկներ: Մենք գիտենք թէ ի վերջոյ պարկեշտութիւնը լաւագոյն քաղաքականութիւնն է: Գիտենք թէ իմաստութիւն է յարգել մեր միջազգային յանձնառութիւնները: Մենք գիտենք որ ո եւ է ցեղ գերագոյն չէ ուրիշ ցեղէ մը»:

Տեղական թերթերը մեծ կարեւորութիւն կուտան այս արտայայտութեանց, որ կը զուգադիպին չեխական տագնապին եւ Նիւրընպէրկի համագումարին:

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՓԱՐԻԶԻ ԵՐԵՍՓՈԽԱՆ Պ. Էտուառ Սուլիէ, նախկին դեր - նախագահ երեսփ. ժողովին, մեռաւ ծանր հիւանդութենէ մը վերջը: Ծնած էր 1870ին, Պուաթօ: Անդամ՝ հանրապետական միութեան, եղած է եռանդուն բարեկամ մը հայ ժողովուրդին, մասնակցելով անոր վիշտերուն եւ ուրախութիւններուն: Յաճախ կ'երեւար հայկական հանդէսներու մէջ, իբրեւ բանախօս՝ անկախութեան տօնին, Աստուածաշունչի թարգմանութեան 1500ամեակին եւն.:

ՅԱՒՈՎ Կ'ԻՄԱՆԱՆՔ թէ ինքնաշարժի արկած մը անցուցած է Պ. Աստուածատուր Վաչեանց, 75 տարեկան: Պուլվառ Կրընէլէն անցած ատեն, ինքնաշարժ մը կը զարնուի մեր բարեկամին, գետին տապալելով զայն: Պ. Վաչեանց անմիջապէս հիւանդանոց կը փոխադրուի, նախնական դարմաններն ստանալով: Բարեբախտաբար վէրքերը ծանր չեն:

ՀՈՒՆԳԱՐԻԱ ազատած ըլլալով դաշնագրի կապանքներէն, որոշեց պարտաւորիչ զինուորութիւն հաստատել, ինչպէս Պուլկարիան:

ՌՈՒՊԷԻ հիւսուածեղէնի բանուորները որոշեցին գործադուլ հռչակել Սեպտեմբեր 8ին:

ԵԳԻՊՏՈՍԻ երիտասարդ թագաւորը մահափորձի մը ենթարկուեցաւ Աղեքսանդրիոյ մէջ: Հանդէսէ մը վերադարձած ատեն, ատրճանակ պարպուեցաւ հարեւան շէնքի մը տանիքէն եւ անցորդ մը վիրաւորուեցաւ թեթեւապէս: Դաւադիրը, որ ձերբակալուեցաւ անմիջապէս, իրաւագիտական ուսանող մըն է, Սուրիացի Սաֆիր, 20 տարեկան:

ԳՆՉՈՒՆՆԵՐՈՒՆ դէմ խիստ միջոցներ ձեռք պիտի առնուին Եուկոսլավիոյ մէջ, նկատելով որ անոնք մանուկներ կ'առեւանգեն, արիւնալի կռիւներ կը սարքեն, գողութիւններ կ'ընեն եւն.:

ՊԱՐՏԱԻՈՐԻՉ զինուորութիւնը ընդհանուր հանգամանք ստացաւ Իրաքի մէջ, քաղաքներէն մինչեւ ցեղախումբերու շրջանները: Կառավարական հրամանագիր մը 120ի վրայ մէկ զինուոր կը սահմանէ քրտական շրջաններու համար, որոնց վարչական կազմակերպութիւնը սկսաւ վերջերս:

ԳՆԴ. ԼԻՆՏՊԷՐԿ, Ամերիկացի աշխարհահռչակ օդաչուն որ Մոսկուա գացած էր վերջերս, Փրակա թռչելով, տեսակցութիւն մը ունեցաւ չեխական հանրապետութեան նախագահին հետ: Քաղաքական շրջանակներու մէջ մասնաւոր կարեւորութիւն կուտան այս այցելութեան:

ՕԴԱՆԱՒ ՄԸ ԻՆԿԱՒ Լոնտոնի մէկ արուարձանին վրայ եւ անմիջապէս բռնկեցաւ: Ածխացան օդաչուն եւ վեց ուղեւորներ, իսկ 25 հոգի ալ վիրաւորուեցան:



# Հ. Յ. Դ.

**Գաւառ**

ՊԱՏԱՆԵԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ «Րաֆֆի» խումբի (Մարսէյլ քաղաքի) բոլոր պատանիները ժողովի կը հրաւիրուին 7 Սեպտ., Չորեքշաբթի երեկոյ «Ճաթիկեան» սրահին մէջ՝ կարեւոր օրակարգ:

Վ.ԱԼԱՆՍԻ կոմիտէի ընդհ. ժողովը 8 Սեպտ., Հինգշաբթի երեկոյ ժամը 9ին, Հ. Յ. Դ. «Սիամանթօ» ակումբին մէջ: կարեւոր օրակարգ:

ՊՈՒԱԼԻՒԶԻԻ (Մարսէյլ) «Վարանդեան» խումբի ընդհ. ժողովը 10 Սեպտեմբեր, Շաբաթ երեկոյ ժամը 9ին ընկ. Արապեաններու բնակարանը:











## ՑՈՒՑԱՏԵՏՐ

Հ. Ց. ՄԻՈՒԹԵԱՆ Վ.ալանսի Մասնաճիւղին ընդհ. ժողովը՝ 5 Սեպտեմբեր, երկուշաբթի երեկոյեան ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

Հ. Մ. Ը. Մ.ի Փարիզի Ֆուքպոլի Յանձնախումբը հաղորդելով 1938—39 եղանակի բացումը, Ընդհ. Ժողովի կը հրաւիրէ հին ու նոր խաղացողները, 8 Սեպտ. Հինգշաբթի երեկոյեան ժամը 9ին, Chope du Nord սրճարանի գետնայարկը, Metro Gare du Nord:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Գէորգ Թարագճեան, 29—30 տարեկան, Ամասիացի, հօր անունը՝ Ցալութիւն, մօր անունը՝ Մարիամ: 4—5 տարի առաջ Նիս մեկնած է, ուրկէ Թուլոն անցած ըլլալ կը կարծուի: Կը խնդրուի յիշեալ երկու վայրերու հայութենէն որ եթէ ճանչցողներ կան, իմացնեն հետեւեալ հասցէին.— Mme. Mariam Tarakdjian, 10 bis— Allée Yvonne, Clamart:


















Le Gérant : H. STEPHAN

17, Rue Damesme, PARIS (13) A. DER (AGOPIAN)

